*Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք*



ՀԿ(բ)Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

# № 3

ՀԱՅԿՈՒՍՀՐԱՏ ● 1936 ● ՅԵՐԵՎԱՆ

*Պրոլետարնե՛ր բոլոր յերկրների, միացե՛ք*

ՀԿ (բ) Կ ԿԵՆՏԿՈՄԻ ԿՈՒՍ. ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ
ՅԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 3



ՀԱՅԿՈՒՍՀՐԱՏ ● ՅԵՐԵՎԱՆ ● 1936

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Թարգմ. Մ. Հովհաննիսյան, Խմբ. Գինո Շաղգամյան, Տեխն. խմբ. Ս. Խաչատրյան, Սրբագրիչ Լ. Սրովյան

Գլավլիտի լիազոր № 1097—А, Հրատ. № 402,
Պատվեր 294, Տիրաժ 5000, Ինդեքս П—34 / РК
Հանձնվել է արտադրության 28/X 1936 թ.
Ստորագրվել է տպագրության 3/XI 1936 թ.

Հայկուսհրատի տպարան, Երևան,
Ալլահվերդյան № 27


# ՏՐՈՑԿԻՍՏԱԿԱՆ-ԶԻՆՈՎՅԵՎՅԱՆ ԲԱՆԴԻՏՆԵՐԸ ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ՌԵՍՏԱՎՐԱՑԻԱՅԻ ԱՌԱՋԱՎՈՐ ՋՈԿԱՏՆ ԵՆ

Տրոցկիստական-զինովևյան տեռորիստական կենտրոնի դատավարությունը բացարձակ պայծառ ճառագայթով լուսավորեց Տրոցկու, Զինովևի, Կամենևի և նրանց արբանյակների ամբողջ նողկալի գործունեությունը, հակահեղափոխական, տրոցկիստական – զինովևյան ընդհատակի բոլոր գարշահոտ անկյունները:

Տրոցկիստական – զինովևյան մարդասպանների դատավարության նշանակությունը նաև այն է, վոր այդ պրոցեսը մինչև վերջը մերկացրեց տրոցկիստական-զինովևյան բանդիտիզմի քաղաքական բո-

վանդակությունը, բանդիտիզմ, վորն իր խայտառակ ուղին ավարտեց սերտ բարեկամություն հաստատելով գերմանական ֆաշիզմի հետ և աշխարհիս առաջին սոցիալիստական պետության ղեկավարների, խորհրդային ժողովրդի և նրա կուսակցության —Համամիութենական կոմունիստական բոլշևիկների կուսակցության ղեկավարների սպանություններ կազմակերպելով:

ԽՍՀՄ Գերագույն դատարանի դատավճռի համաձայն գնդակահարված տրոցկիստական-զինովյևյան բանդիտները լիովին մերկացվել են իբրև ժողովրդի ամենավոխերիմ թշնամիներ, վորոնք մի շարք տարիների ընթացքում պայքարել են սոցիալիզմի և Խորհուրդների դեմ, սոցիալիստական ինդուստրացման և կոլեկտիվացման դեմ, ԽՍՀՄ աշխատավորների աճող բարեկամության դեմ:

Տրոցկիստներ – զինովյևականները մերկացվեցին իբրև ֆաշիզմի գործակալներ և աշխատակիցներ, վորոնք անցել եյին կու-



սակցության և խորհրդային իշխանության դեմ մղվող պայքարի ամենաստոր միջոցներին, այն է՝ խորհրդային ժողովրդի լավագույն մարդկանց սպանությանը, միայն նրա համար, վորպեսզի վոչնչացնեն սոցիալիզմը, վերականգնեն կապիտալիստական կարգերը, վերականգնեն 19 տարի սրանից առաջ տապալված կալվածատերերի, ֆաբրիկանտների ու գործարանատերերի իշխանությունը:

Վորքան էլ խնամքով ծածկեին տրոցկիստական – զինովյևյան բանդայի պարագլուխները նույնիսկ դատավարության միջոցին իրենց չարագործության իսկական առիթները, վորքան էլ ոբեր-բանդիտ Տրոցկին և ֆաշիստական մամուլը ոգնեն իրենց գործակիցներին, վորքան էլ հնարագիտություն ցուցաբերեն բանդիտների կամավոր պաշտպաններ Սիտրինը, Ֆր. Ադլերը և մյուսները—փաստը մնում է փաստ, վոր Տրոցկիստական-զինովյևյան տեռորիստական կենտրոնի իսկական դրոշ յեղել է կապի-

տալիզմի ռեստավրացիան յերկրագնդի այն մասում, ուր կապիտալիստական կարգերը տապալվեցին 1917 թվի հոկտեմբերին և ուր ազատ ժողովուրդը Լենինի և Ստալինի ղեկավարությամբ կառուցեց սոցիալիստական հասարակություն:

*Այս միակ նպատակին են ծառայել հակահեղափոխական տրոցկիզմի բոլոր յուրատեսակ թեորիական «հիմնավորումները» մի շարք տարիների ընթացքում:*

*Այս նպատակին է յենթարկված յեղել տրոցկիստներ–զինովյեվականների հակակուսակցական և հակախորհրդային վնասարար աշխատանքը մեր յերկրում և մեր յերկրի սահմաններից դուրս:*

*Այս նպատակով եյին տրոցկիստական–զինովյեվյան տեռորիստները պատրաստում ընկեր Ստալինի և նրա ամենամերձավոր զինակիցների զզվելի սպանությունը, վորոնց անունները մարմնացնում են այն նոր հասարակակարգը, սոցիալիզմը, վորը գա-*



*լիս է փոխարինելու կապիտալիզմին և վորը հաղթանակել է Խորհուրդների յերկրում:*

*Կապիտալիստական ռեստավրացիայի գրոհային ջոկատը ՍՍՀՄ-ում—ահա՛ տրոցկիստական–զինովյեվյան բանդայի իսկական դեմքը:*

*Դեռ* 1921 *թվին կուսակցության* X *համագումարում Լենինը, մերկացնելով Տրոցկուն և անարխոսինդիկալիստական ոպոզիցիային կուսակցության մեջ, զգուշացնում եր, վոր ֆրակցիոներները, մարդիկ, վորոնք հանդես են գալիս կուսակցության դեմ, կոմունիզմի դեմ, համառելով իրենց սխալների մեջ, իրենց քաղաքական գծի մեջ, շարունակելով պայքարը կուսակցության դեմ, անխուսափելիորեն պետք է գլորվեն սպիտակ – գվարդիական հակահեղափոխության բանակը:*

*Մարդասպանների տրոցկիստական–զինովյեվյան բանդայի խայտառակ և ստոր ուղին ցույց է տալիս, թե ինչպես վայլուն կեր-*

պով արդարացավ Լենինի այդ մարգարեական նախագուշակությունը:

Սկսելով հակակուսակցական ֆրակցիա կազմելուց, անցնելով կուսակցության դեմ պայքարելու ավելի և ավելի սուր մեթոդների, կուսակցությունից վտարվելուց հետո դառնալով բոլոր հակախորհրդային, հակահեղափոխական խմբակների և հոսանքների կիզակետն ու շտաբը, տրոցկիստներ-զինովևականները, ստորինից ստորին գլորվելով, դարձան ֆաշիզմի շղթայած շները, ժողովրդի ամենավոխերիմ թշնամիները, վորոնք մահափորձ են կատարում նրա առաջնորդների դեմ, դարձան հակահեղափոխական բուրժուազիայի առաջավոր ջոկատը, նրա կամքի ու ակնկալությունների արտահայտիչը:



XIV կուսակցական համագումարում Զինովևն ու Կամենևը հանդես յեկան մեկ



մեր յերկրում սոցիալիզմ կառուցելու լենինստալինյան թեորիայի դեմ:

Համագումարից հետո շատ չանցած կազմվեց տրոցկիստների ու զինովևականների սերտ բլոկ:

Տրոցկիստներ-զինովևականների մոլեգին գրոհն ընդդեմ սոցիալիզմի կառուցմանը մեր յերկրում կազմում եր նրանց ծրագրի—կապիտուլյացիայի, կապիտալիզմի վերականգնման ծրագրի հիմքը:

Կապիտուլյացիան, Մեծ պրոլետարական հեղափոխության նվաճումների հանձնումը միայն մի բան եր նշանակում՝ կալվածատերերի ու կապիտալիստների իշխանության վերադարձը, կապիտալիստական կարգերի վերադարձը:

Հենց այն պատճառով, վոր տրոցկիստներ-զինովևականները ամենից ավելի վարպետորեն եյին քողարկում այդ ծրագիրը, միջազգային բուրժուազիան և յերկրի ներսում յեղած դասակարգային խորթ ուժերը

հույսները դրել եյին Տրոցկու, Զինովյևի, Կամենևի և նրանց արբանյակների վրա։

ԽՍՀՄ-ում կապիտալիստական տարրերի վերացման պրոցեսում մեկը մյուսի հետևից ասպարեզից դուրս յեկան նեպմենների, մենշևիկների ջախջախված ու վոչնչացված հակախորհրդային բուրժուական կուսակցությունները. նրանց տեղը բռնեց տրոցկիստական-զինովյևյան խմբակը, վորը դարձավ սոցիալիզմի բոլոր թշնամիների վերջին հույսը։

1925-1926 թվականներին Տրոցկին, Զինովյևը և Կամենևը Համկ(բ)Կ ներսում յեղած մանր բուրժուական այն ոպոզիցիայի մարմնացումն եյին, վորը ձախ ֆրազներով քողարկված դիմադրում եր ինդուստրացման և կոլեկտիվացման քաղաքականությանը։ 1925 թվականը մեծագույն պատմական մի նշանաձող եր պրոլետարական հեղափոխության զարգացման ասպարեզում։ Կուսակցության առաջ ծառացան խնդիրներ, վորոնք իրենց պատմական թափով



այդ ժամանակաշրջանը մոտեցնում եյին նախահոկտեմբերյան ժամանակաշրջանի հետ։ Այս մատնանշեց կուսակցության ընկեր Ստալինը՝

«Այն ժամանակ, 1917 թվին, խոսքն այն մասին եր, վորպեսզի անցում կատարենք բուրժուազիայի իշխանությունից դեպի պրոլետարիատի իշխանությունը։ Այժմ, 1925 թվին, խոսքն այն մասին է, վորպեսզի անցում կատարենք այժմյան եկոնոմիկայից, վորը ամբողջությամբ վերցրած չի կարելի սոցիալիստական անվանել, դեպի այն եկոնոմիկան, վորը պետք է սոցիալիստական հասարակության նյութական հիմք ծառայի»[1]։

Սոցիալիստական եկոնոմիկային անցնելու այս մեծագույն պատմական խնդրի դրումն ու լուծումը նախապատրաստվել եյին Լենինի ու Ստալինի ղեկավարած բոլշևիկների նախորդ վճռական ու անձնուրաց ամբողջ

---

[1] «Сталин, «Об октябрьской революции», եջ 106:

պայքարով: Կուսակցությունն սկսեց նոր պայքար — պայքար՝ դեպի սոցիալիստական վերակառուցում շրջադարձ կատարելու համար հսկայական տնտեսական-քաղաքական դժվարությունների պայմաններում, բարդ միջազգային պայմաններում: 1925 թվին փաստ դարձավ կապիտալիզմի մասնակի և հարաբերական կայունացումը, հեղափոխության տեմպի դանդաղումը կապիտալիստական յերկիրներում: Մեր յերկիրը այդ ժամանակամիջոցին զգալի նվաճումներ ձեռք բերեց ժողովրդական տնտեսությունը վերականգնելու գործում: Բայց սոցիալիստական շինարարության գլխավոր դժվարությունները դեռ մեր առջևն եյին: ԽՍՀՄ, շարունակում եր մնալ հետամնաց յերկիր աննշան ինդուստրիալ բազայով, վորը մի փոքրիկ կղզի յեր հանդիսանում անհատական գյուղացիական մանր ու մանրադույն տնտեսությունների ովկիանում:

Հատկապես այդ շրջանում առանձին, ակտուալ նշանակություն ձեռք բերեց ընկեր



Ստալինի զարգացրած՝ մեկ յերկրում սոցիալիզմի հաղթանակի վերաբերյալ լենինյան թեորիան, առանձին նշանակություն ձեռք բերեց սոցիալիզմի ճակատագրի հարցը մեր յերկրում: Կապիտալիստական աշխարհը չափազանց թշնամաբար եր նայում ժողովրդական տնտեսության սոցիալիստական վերակառուցման համար մղվող՝ բոլշևիկների պայքարին: Միջազգային իմպերիալիզմը տեսնում եր ի դեմս Խորհուրդների յերկրի իր գլխավոր թշնամուն, միջազգային սոցիալիստական հեղափոխության բազան և հզոր հենարանը:

Պաշտպանելով հակահեղափոխության ներքին ուժերը—ջախջախված, բայց դեռ չվոչնչացված չհաշտվող դասակարգերին, իմպերիալիզմը ուժեղ կերպով ինտերվենցիա յեր պատրաստում ընդդեմ ԽՍՀՄ-ի: Կապիտալիստական աշխարհն այդ պայքարում փնտրում եր և 1925 թվին գտավ նոր դաշնակիցներ ի դեմս հակակուսակցական, տրոցկիստական-զինովևյան ոպոզիցի-

այի: Իրականացան ընկեր Ստալինի նախա-գուշակումներն այն մասին, թե ինչպես 1917 թվի Հոկտեմբերից առաջ մարդիկ կա-յին, վորոնք փորձում եյին խանգարել կու-սակցությանը Հոկտեմբերյան սոցիալիստա-կան հեղափոխության համար մղվող պայ-քարում, այնպես ել այժմ, 1925 թվին, կգտնվեն մարդիկ, վորոնք կաշխատեն խան-գարել կուսակցությանը մեր յերկրում սո-ցիալիզմի հաղթանակի համար մղած նրա պայքարին: Յեվ պատահական չե, վոր այդ մարդիկը դուրս յեկան Զինովյեվն ու Կամե-նեվը. անարգ դավաճանները—Հոկտեմբերի շտրայկբրեխերները—հանդես յեկան խղճուկ կապիտուլյանտների դերում, վորոնք փոր-ձում եյին կուսակցությանը ստիպել հրա-ժարվելու գյուղացիության հիմնական մաս-սաների հետ սոցիալիզմ կառուցելու լենի-նյան պլանից, հրաժարվելու սոցիալիստա-կան ինդուստրացման քաղաքականությունից, անձնատուր լինել դասակարգային թշնամուն և այդպիսով ճանապարհ հարթել մեր յեր-



կրում կապիտալիզմը վերականգնելու հա-մար:

Թե՛ մեր պետական ձեռնարկությունների կապիտալիստական բնույթի վերաբերյալ պարտվողական տեղումները, վորոնք ուղղ-ված եյին յերկրի ինդուստրացման դեմ, թե՛ Սոկոլնիկովի առաջադրած «դաուեսացման»—ԽՍՀՄ կապիտալիզմի կցորդ դարձնելու—պլանը,—այդ բոլորն ել մեր յերկրում կա-պիտալիզմը վերականգնելու հակահեղափո-խական, տրոցկիստական-զինովյեվյան ծրա-գրի պրակտիկ կետերն եյին:

Զուր չե, վոր խորհրդակցություններից մեկում ընկեր Ձերժինսկին հակակուսակ-ցական ճառով հանդես յեկած Զինովյեվի և ամբողջ տրոցկիստական-զինովյեվյան խմբակի հասցեյին շպրտեց «դուք կրոնշ-տադցինե՞ր եք, դուք դավաճաննե՞ր եք» ցասկոտ և խարանող խոսքերը:

Տրոցկու հին թեզիսը մի յերկրում սոցի-ալիզմի հաղթանակի անհնարինության մա-սին, սոցիալիստական Ռուսաստանի կոր-

ծանման անխուսափելիության մասին դուրս յեկած ամենապիտանի ծրագիրը Զինովյեվի ու Կամենեվի համար, որոնք 1917 թվին ակտիվ կերպով պայքարում եյին ընդդեմ սոցիալիստական հեղափոխության: Հենց այդ տրոցկիստական ծրագիրն էլ միացրեց Տրոցկուն, Զինովյեվին և Կամենեվին կուսակցության դեմ, ժողովրդի դեմ, սոցիալիզմի դեմ նրանց մղած պայքարում:

Կուսակցությունը վոտնատակ անելով դավաճանների ու շտրայկբրեխերների դիմադրությունը՝ լայն տնտեսական շինարարություն եր ծավալում, ամրացնելով պրոլետարիատի դիկտատուրայի տնտեսական դիրքերը: Վերականգնման շրջանից դեպի վերակառուցման շրջանն անցնելու պահին սկսվեց սոցիալիստական շինարարության պայքարի պատմության մեջ ամենավճռական մոմենտներից մեկը: Սրվեց դասակարգային թշնամու դիմադրությունը: Խորհրդային միության առաջ ամենայն սրու-



թյամբ ծառացավ ինտերվենցիայի սպառնալիքը:

Այս պայմաններում տրոցկիստական-զինովյեվյան բլոկը կատաղի գրոհ սկսեց կուսակցության և նրա ղեկավարության դեմ: «Տերմիդորի»—կուսակցության և խորհրդային իշխանության վորպես թե բուրժուական այլասերման—զրպարտչական աղաղակների ծխածածկույթի տակ տրոցկիստներ-զինովյեվականները ծավալում եյին կապիտուլյացիայի, Մեծ պրոլետարական հեղափոխության նվաճումները լիովին թշնամուն հանձնելու և կապիտալիստական կարգերի վերականգնման ծրագիրը:

Տրոցկիստական-զինովյեվյան բլոկը հռչակեց պարտվողականության լոզունգը Խորհրդային Միության և իմպերիալիստների գոտեմարտում: Տրոցկիստներ-զինովյեվականները իմպերիալիստներին կուսակցության և խորհրդային իշխանության վերաբերյալ զրպարտչական նյութեր և սուտ տեղեկություններ եյին մատակարարում, հեչ-

տացնելով իմպերիալիստներին ԽՍՀՄ-ի դեմ տնտեսական ճնշում և ռազմական հարձակում կատարելու գործը:

Տրոցկիստներ-զինովևականները բացահայտ կերպով կանգնեցին յերկրորդ կուսակցության—կապիտալիզմը վերականգնողների կուսակցության կազմակերպելու ուղիի վրա: Կուսակցությունից դաղտնի աշխատող ընդհատակյա ֆրակցիոն կազմակերպություն, դաղտնի ժողովներ, բացահայտ ալլիանս գվարդիականների՝ վրանգելյան սպաների աջակցությամբ, հակախորհրդային գրականություն տպելու համար անլեգալ տպարաններ կազմակերպելը, հակախորհրդային ցույցերը—ահա տրոցկիստներ-զինովևականների հակահեղափոխական վերասերման ուղին: Սպառելով տրոցկիստական-զինովևյան, հակակուսակցական խմբակի դեմ կուսակցության շրջանակներում պայքարելու բոլոր միջոցները, կուսակցությունը XV համագումարում մերկացրեց տրոցկիստական-զինովևյան



հակահեղափոխության իսկական էությունը և իր շարքերից վտարեց նրա պարագլուխներին ու ակտիվ մասնակիցներին: Կուսակցությունից դուրս մնացող Տրոցկին, Զինովևը, Կամենևը և նրանց արբանյակները ամբողջությամբ, առանց քաշվելու իրենց դրսևորեցին իբրև կապիտալիզմի ռեստավրատորների հակախորհրդային կուսակցություն, վորը թշնամի յե խորհրդային իշխանությանը, կոմունիստներին, թշնամի յե սոցիալիզմի գործին:



Տրոցկիստներ-զինովևականներն արագ կերպով դեն նետեցին ձախ զգեստների այն մնացորդները, վորոնցով առաջ նրանք քողարկված եյին: Տրոցկիստներ-զինովևականների 'ձախ' ֆրազը կուսակցության կողմից մերկացվեց: Ջախջախված և մեկուսացված տրոցկիստական-զինովևյան խմբակը չեր կարող մասսաների մոտ գնալ կապիտալիզմի վերականգնման բացահայտ պլատֆորմով: Այդ պատճառով էլ տրոց-

կիստական–զինովյեվյան հակահեղափոխությունը հենց այդ ժամանակվանից ի վեր սկսում է առանձնապես լայն կերպով կիրառել ամենազզվելի յերկերեսանիության, կուսակցությանն ու բանվոր դասակարգին խաբելու մեթոդները:

Կուսակցության XV համագումարում ընկեր Ստալինը յերկերեսանիությունը մատնացույց արավ վորպես տրոցկիստական–զինովյեվյան բլոկի բնորոշ ու հիմնական գծերից մեկը: Ընկեր Ստալինը Կամենևի ճառը խարազանեց՝ այն անվանելով «ամենակեղծ, ամենափարիսեցիական, ամենախարդախ և ամենախաբեբայական ճառը ոպոզիցիոն բոլոր ճառերից»:

«Ինչո՞վ բացատրել ոպոզիցիայի այդպիսի վարմունքը—հայտարարեց ընկեր Ստալինը կուսակցության XV համագումարում:— Այդ վարմունքը կարելի յե բացատրել միայն մի բանով՝ կուսակցությունը խաբելու, նրա աչալրջությունը թմրեցնելու, կուսակցությանը մի անգամ



ևս մոլորության մեջ գցելու ցանկությամբ: Ոպոզիցիան յերկու յերես ունի՝ մեկը փարիսեցիորեն–սիրալիր, մյուսը մենշևիկյան–անտիհեղափոխական: Նա կուսակցությանը ցույց է տալիս իր փարիսեցիորեն–սիրալիր դեմքը, յերբ կուսակցությունը նրան հուպ է տալիս և նրանից պահանջում է հրաժարվել ֆրակցիոնականությունից, պառակտման քաղաքականությունից: Նա ցույց է տալիս իր մենշևիկյան – անտիհեղափոխական դեմքը, յերբ հանձն է առնում բողոքով դիմելու վոչ–պրոլետարական մասսաներին, յերբ հանձն է առնում բողոք ուղղելու փողոցին կուսակցության դեմ, խորհրդային իշխանության դեմ... Կարելի՞ յե արդյոք հետագայում ևս հանդուրժել այդ յերկվությունը, այդ յերկդիմությունը: Պարզ է, վոր այլևս չի կարելի հանդուրժել և վոչ մի րոպե»:

Կուսակցության XV համագումարի ժամա-

նախամիջոցին տրոցկիստական–զինովյեվյան բլոկը հայտնաբերում է հակահեղափոխության կուսակցության բոլոր տարրերը։ Տրոցկիստներ–զինովյեվականներն ունեյին իրենց ծրագիրը—մեր յերկրում սոցիալիզմի դեմ պայքարելու ծրագիր, մեր յերկրում կապիտալիզմը վերականգնելու ծրագիր։ Տրոցկիստական–զինովյեվյան բլոկն ուներ իր ընդհատակյա կազմակերպությունը, վորը փնտրում և իրեն դաշնակիցներ եր գտնում սպիտակ–գվարդիականների միջև, վորը քանի գնում, այնքան ավելի սերտ կերպով եր շաղկապվում մեր յերկրի ներսում և յերկրից դուրս գտնված հակահեղափոխական թափթփուկների հետ։ Տրոցկիստական–զինովյեվյան բլոկն ուներ Տրոցկու, Զինովյեվի և Կամենևի կողմից կուսակցության և նրա ղեկավարության հանդեպ դասակարգային ատելության վոգով, մեր կուսակցության առաջնորդի հանդեպ—հանճարեղ Ստալինի հանդեպ ատելության վոգով դաստիարակված իր կադրերը։ Դրանք ամեն ինչի



ընդունակ թոկից փախածների կադրեր եյին, վորոնք նախապատրաստված եյին քաղաքական մարդասպանների ու բանդիտների իրենց ապագա դերի համար։

Դեռ այն ժամանակ, կուսակցության XV համագումարի նախորյակին Մոլոտովը մատնանշեց, վոր ոպոզիցիայի շարքերում կան հանցագործ, տեռորիստական տրամադրություններ։

«Սակայն ներկա պայմաններում—հայտարարեց ընկ. Մոլոտովը Մոսկվայի կուսակտիվի նիստում—յերբ ոպոզիցիայի շարքերում գտնվում են մարդիկ, վորոնք կուսակցականությունը թանգ չեն գնահատում, կուսակցության դեմ ծայր աստիճան դառնացած են, ֆրակցիոն պայքարի սրումը կուսակցության առանձին ղեկավարների դեմ, մասնավորապես ընկ. Ստալինի դեմ, ուղղակի հանցագործ բնույթ է ընդունում։ Ոպոզիցիան իր շարքերում վորոշ այնպիսի տարրեր է դաստիարակում, վորոնք պատրաստ են

կուսակցության դեմ պայքարելու ամեն միջոցներով: Ուստի պայքարի սրումը՝ անձնական հարձակումների և առանձին անձնավորությունների հալածելու ուղղությամբ կարող է ուղղակի ընդդեմ կուսակցության պարագլուխների հանցագործ տեռորիստական տրամադրություններ հրահրելուն ծառայել»: (*Ձայներ՝ «ճիշտ է»*)[1]:



*Անզոր կատաղության մեջ տրոցկիստական-զինովևյան հակահեղափոխությունն աշխատում էր կանգնեցնել սոցիալիզմի հաղթական առաջխաղացումը:*

1930 *թվին Տրոցկին մի անգամ ևս ձևակերպեց տրոցկիստական-զինովևյան հակախորհրդային խմբակի ծրագիրը:*

*Տրոցկին պահանջում էր՝ «գյուղատնտեսության բնագավառում կասեցնել հետագա կոլեկտիվացումը... արդյունաբերության*

1 *Ընդգծումը մերն է:* Խմբ.:



*բնագավառում դադարեցնել ինդուստրիալ մրցարշավը, դեն նետելով «Հնգամյակը չորս տարում» լոզունգը... Թեորիական բնագավառում վերացնել մի յերկրում սոցիալիզմի թեորիան»:*

*Հենց այն մոմենտին, յերբ կուսակցությունն Ստալինի բերանով ամբողջ աշխարհովը մեկ հայտարարեց սոցիալիզմի ծավալուն հարձակման մասին, հակահեղափոխական տրոցկիստներ — զինովևականները պարզեցին կապիտալիզմի լիակատար ռեստավրացիայի, կալվածատերերի, ֆաբրիկանտների ու գործարանատերերի իշխանության ռեստավրացիայի դրոշը: Հակահեղափոխական տրոցկիստական — զինովևյան խմբակի այս ծրագիրը մի անգամ ևս հաստատեց այս կապիտուլյանտների դիմակը մշտապես պատռող ընկեր Ստալինի մերկացումների պատմական արդարացիությունը:*

*«Իրականում կապիտուլյանտություն՝ որպես* բովանդակություն, *«ձախ» ֆրազներ ու «հեղափոխական» — ավանտյուրիստական*

հակումներ՝ վորպես ձև, վորը քողարկում և ռեկլամում է կապիտուլյանտային բովանդակությունը—այս է տրոցկիզմի էությունը»,—ասում էր ընկեր Ստալինը կուսակցության XVI համագումարում:

Տրոցկիստական-զինովևյան հակահեղափոխական տականքներն իրենց թևավորված զգացին 1931 և 1932 թվականներին: Բանն այն է, վոր հենց այդ ժամանակ կուսակցությունը բավականին մեծ դժվարությունների հանդիպեց գլխավորապես գյուղատնտեսության բնագավառում: Պրոլետարիատի դիկտատուրայի կողմից վոչնչացվող շահագործող դասակարգերի մնացորդները, զգալով իրենց անխուսափելի կործանումը, նոր տակտիկայի անցան: Դասակարգային թշնամիները փորձում եյին ներս սողոսկել կոլտնտեսությունների ու խորհտնտեսությունների ղեկավարության մեջ և այնտեղ աշխատանքը կազմալուծել վնասարարության, պետության առաջադրանքների սաբոտաժի միջոցով: Այդ մի փորձ էր կոլ-



տնտեսությունները ներսից պայթեցնելու, նրանց քայքայելու: Թշնամին կամենում էր այս ծայրից տապալել խորհրդային իշխանությունը, կապիտալիստական կարգեր հաստատել:

Տրոցկիստական-զինովևյան հակահեղափոխականներին թևավորում էր պրոլետարական դիկտատուրային թշնամի դասակարգերի մնացորդների դիմադրության աճումը, նրանց վոգևորում էր ԽՍՀՄ-ի կապիտալիստական շրջափակումը: Հույս դնելով խորհրդային թիկունքի թուլացման վրա՝ միջազգային հակահեղափոխությունն արագացրեց ինտերվենցիայի նախապատրաստումը: Ինչպես հայտնի յե, ինտերվենտները Խորհրդային Միության դեմ հարված եյին պատրաստում 1931 թվի ամառը, իսկ ճապոնիան, մասնավորապես, մանրամասն պլան եր մշակել Խորհրդային Միության վրա հարձակվելու 1932 թվին:

Վերջապես հակահեղափոխական տրոցկիստներ-զինովևյականների բեկորները դի-

տեյին, վոր նրանց հետ կողք-կողքի գործում են կապիտալիզմի վերականգնման այլ պաշտպաններ ևս:

Յեվ իրոք, Արդյունաբերական կուսակցությունը, հակահեղափոխական կոնդրատյեվական «Աշխատավորական գյուղացիական կուսակցությունը», «Մենշևիկների Միութենական բյուրոն»—լրտեսների, վնասարարների, դիվերսանտների այս բոլոր կազմակերպությունները վողջունեցին տրոցկիստների պայքարը կուսակցության դեմ, իմանալով, վոր ի դեմս տրոցկիստների նրանք ունեն պրոլետարիատի դիկտատուրայի տապալման և կապիտալիզմի վերականգնման իրենց նման պաշտպաններ:

Հակահեղափոխական արտասահմանյան մենշևիկյան կենտրոնը ԽՍՀՄ-ի իրենց գործակալներին ուղղված դիրեկտիվ նամակում մատնանշում եր, վոր «տրոցկիստները Համ. Կ(բ)Կ Կենտկոմի դեմ մղած պայքարի հետևանքով ըստ եյության անցել են սոցիալ-դեմոկրատիայի դիրքերը» և վոր տրոց-



կիստներին անհրաժեշտ ե ցույց տալ աջակցություն, «վորը պետք ե արտահայտվեր տրոցկիստների հետ համերաշխորեն կուսակցությունը քննադատելու մեջ»[1]:

1932 թվին տրոցկիստական-զինովյեվյան հակահեղափոխականները իրենց վրա յեն վերցնում հակախորհրդային խմբակների կոնսոլիդացիայի (համախմբման) խնդիրը:

Տրոցկիստներ-զինովյեվականները կապ են հաստատում աջ ոպոզիցիայի հետ կուսակցության դեմ միատեղ պայքար մղելու համար: Այս կապերի հիմքը և նրանց իսկական բովանդակությունը մերկացրեց ընկեր Ստալինը: XVI և XVII կուսակցական համագումարներում ընկեր Ստալինը մատնանշեց, վոր կապիտալիզմը ԽՍՀՄ-ում վերականգնելու ձգտումը միացնում ե հակահեղափոխական տրոցկիստներ-զինովյեվականներին «առանց դիմակի կապիտուլյանտների»

---

1 Процесс контрреволюционной организации меньшевиков, եջ 83, 1931 թ.:

հետ, ինչպես անվանում էր աջերին ընկեր Ստալինը:

«Ահա ձեզ անարգ յերկչոտների ու կապիտուլյանտների ծրագիրը, ԽՍՀՄ-ի մեջ կապիտալիզմը վերականգնելու հակահեղափոխական ծրագիրը—ասում էր ընկեր Ստալինը կուսակցության XVII համագումարում:—Ինչո՞վ է այն տարբերվում ծայրահեղ աջերի ծրագրից: Պարզ է, վոր վոչնչով»[1]:

Զինովևի, Կամենևի անարգ անունները նորից յերևան են գալիս, յերբ կուսակցությունը մերկացնում է կապիտալիզմի ռեստավրատորներ Ռյուտին — Սլեպկովի հակահեղափոխական խմբակը և աջ ոպոզիցիայի (Ուգլանով) ու աջ—«ձախ» բլոկի (Ստեն) շարքերից յելած նրանց արբանյակներին:

Այսորվա լույսի տակ առանձնապես պարզ յերևում է, թե ինչ հսկայական, պատմա-

[1] Ստալին, Լենինիզմի հարցերը, եջ 728:



կան գործ կատարեց ընկեր Ստալինը, վորը 1931 թվի վերջում ցույց տվեց տրոցկիստական – զինովևյան հակահեղափոխության իսկական դեմքը նրա «նոր» վորակի մեջ:

Ընկեր Ստալինի նամակը «Պրոլետարսկայա Ռևոլյուցիա» ժուռնալի խմբագրությանը պայծառ լուսարձակի նման լուսավորեց տրոցկիզմի իսկական դերը՝

«Իսկ տրոցկիզմն առաջավոր ջոկատն է հակահեղափոխական բուրժուազիայի, վորը պայքար է մղում կոմունիզմի դեմ, խորհրդային իշխանության դեմ ԽՍՀ Միության մեջ սոցիալիզմ կառուցելու դեմ:

Հակահեղափոխական բուրժուազիային ո՞վ տվեց բոլշևիզմի դեմ ուղղված հոգևոր զենք՝ ինչպես այն թեզիսը, թե սոցիալիզմի կառուցումը մեր յերկրում անհնարին է, ինչպես այն թեզիսը, թե բոլշևիկների վերասերումն անխուսափելի յե և այլն: Այդ զենքը նրան տրոցկիզմը տվեց: Չի կարելի պատահականություն համարել այն փաստը, վոր բոլոր հակա-

խորհրդային խմբավորումները ԽՍՀՄ-ում խորհրդային իշխանության դեմ պայքարելու անխուսափելիությունը հիմնավորելու վերաբերյալ իրենց փորձերում վկայակոչում էին տրոցկիզմի հայտնի թեզիսը մեր յերկրում սոցիալիզմ կառուցելու անհնարինության մասին, խորհրդային իշխանության վերասերման անխուսափելիության մասին, կապիտալիզմին վերադառնալու հավանականության մասին:

Հակահեղափոխական բուրժուազիային ԽՍՀՄ-ում ո՞վ տվեց տակտիկական զենք՝ խորհրդային իշխանության դեմ ուղղված բացահայտ ելույթների փորձերի ձևով: Այդ զենքը նրան տվին տրոցկիստները, վորոնք փորձում էին հակախորհրդային ցույցեր սարքել Մոսկվայում ու Լենինգրադում 1927 թվի նոյեմբերի 7-ին: Սա փաստ է, վոր տրոցկիստների հակախորհրդային ելույթները բարձրացրին բուրժուազիայի վոգին ու սանձալուծեցին



բուրժուական մասնագետների վնասարար աշխատանքը:

Հակահեղափոխական բուրժուազիային ո՞վ տվեց կազմակերպական զենք՝ ընդհատակյա հակախորհրդային կազմակերպություններ ստեղծելու փորձերի ձևով: Այդ զենքը նրան տվին տրոցկիստները, վորոնք իրենց սեփական հակաբոլշևիկյան անլեգալ խումբն էին կազմակերպել: Սա փաստ է, վոր տրոցկիստների ընդհատակյա հակախորհրդային աշխատանքը հեշտացրեց հակախորհրդային խմբավորումների կազմակերպական ձևավորումը ԽՍՀՄ-ում:

Տրոցկիզմը հակահեղափոխական բուրժուազիայի առաջավոր ջոկատն է:

Ահա թե ինչու լիբերալիզմը տրոցկիզմի նկատմամբ, թեկուզ և ջախջախված ու դիմակավորված տրոցկիզմի, քյալլագյողություն է, վորը սահմանակցվում է հանցագործության հետ, բանվոր դասակարգին դավաճանելու հետ»:

Տրոցկիզմի ևվոլուցիայի այս նշանավոր բնութագիրը կուսակցությանն օգնեց բոլշևիկյան աչալրջությունը բարձրացնելու, թշնամուն տեսնելու, ինչպես որ նա իրականում կա:



Իրենց հաշիվները 1932 թվին սոցիալիստական շինարարության դժվարությունների վրա կառուցող կապիտալիզմի տրոցկիստական-զինովևյան ռեստավրատորների հույսերը ջուրն ընկան: Դասակարգային թշնամու դեմ մղվող պայքարի պարզ ստալինյան գիծը կուսակցությանը փառավոր հաղթանակ բերեց: Կուսակցությունը ջախջախեց կուլակային սաբոտաժը և համախմբեց կոլտնտեսականներին:

«Հնգամյակը չորս տարում» լոզունգը, որի դեմ այնպես կատաղի կերպով հարձակվում էր Տրոցկին, փայլուն կերպով կենսագործվեց: Ստալինի հանճարեղ առաջնորդությամբ կուսակցությունն այնպիսի արագ տեմպերով ամրացրեց Խորհրդային յերկրի



պաշտպանունակությունը, որ թե՛ Արևմուտքում և թե՛ Արևելքում յեղած թշնամիները ստիպված յեղան ռազմական հարձակումը հետաձգել ավելի ուշ ժամանակի համար: Կուսակցությունը, վերջապես, ջախջախեց բոլոր հակահեղափոխական այն խմբավորումները, որոնց մնացուկն էին հանդիսանում տրոցկիստներ-զինովևականները:

Այն ժամանակ տրոցկիստական-զինովևյան հակահեղափոխությունն սկսեց նոր զենք փնտրել խորհրդային իշխանության և կուսակցության դեմ պայքարելու, կապիտալիզմի վերականգնման համար:

Առաջները, 1927 թվին, Տրոցկին, Զինովյևը, Կամենևը փորձում էին հակախորհրդային ցույցեր կազմակերպել, ձեռնարկություններում գործադուլներ սարքել, հակահեղափոխական թռուցիկներ տարածել: Հակախորհրդային պայքարի այս բոլոր մեթոդներն այն հաշվով էին կիրառվում, որպեսզի տրոցկիստական-զինովևյան հա-

կահեղափոխության ուռկանն ընկնեն մասսաների որոշ մասնիկը, դժգոհություն գրգռելով այդ մասսաների մեջ կուսակցության և խորհրդային իշխանության քաղաքականության դեմ, օգտագործելով դժվարությունները: Սակայն պայմաններն արմատապես փոխվեցին:

Այլևս չի կարելի օգտագործել դժվարությունները, վորովհետև սոցիալիստական հարձակման ստալինյան պլանը օր օրի վրա նորանոր հաղթանակներ, Խորհրդային Միության աշխատավորների բարեկեցության ավելի մեծ աճ է բերում: Հակախորհրդային ցույցի՛ կանչելու համար մարդ չկա, վորովհետև սոցիալիզմին թշնամի դասակարգերի մնացորդները ջախջախված են, իսկ ժողովուրդը, խորհրդային ժողովուրդը, խիտ, համախմբված շարքերով գնում է կուսակցության հետևից, նրա դրոշի, Ստալինի դրոշի տակ սոցիալիզմ է կառուցում: Անզոր է դուրս գալիս տրոցկիստական-զինովևյան գրպարտության թույնն



ընդդեմ Խորհրդային Միության սահմանից այն կողմը. ամբողջ աշխարհի աշխատավորները տեսնում են, թե ինչպես է աճում և ամրանում սոցիալիզմի հենարանը, համաշխարհային պրոլետարիատի հարվածային բրիգադը:

Չի կարելի հույս դնել ինտերվենտների անմիջական հարվածի վրա. չէ՞ որ արդեն խորհրդային սահմանները շրջապատված են ամրությունների պարիսպով, արդեն վերազինված է Կարմիր բանակը, արդեն դղրդում են տանկերը, արդեն օդում սավառնում են ստալինյան բազեները, խորհրդային անվեհեր օդաչուները, վորոնք պատրաստ են ամեն մի րոպե հակահարված տալու չափը կորցրած թշնամուն:

Վերջնականապես սնանկացած, ժողովրդի կողմից արհամարհված տրոցկիստական-զինովևյան հակահեղափոխական խմբակը վորոշում է իր նպատակին—կապիտալիստական կարգերի վերականգնմանը—հասնել զարշելի, սպիտակ-գվարդիական տեռորի

միջոցով: Տրոցկիստական-զինովևյան ճի-
վաղները, վոտք կոխելով քաղաքական բան-
դիտիզմի ուղին, խարեբայությամբ վերա-
դառնում են կուսակցության մեջ, լոյալու-
թյան դիմակ են հագնում ավելի լավ թաղ-
նըվելու և քողարկվելու նպատակով, մամու-
լում, համագումարներում զղջում են իրենց
անցյալ հանցագործությունների համար:

Հենց այդ ժամանակ՝ 1932 թվին է, որ
կազմվում է տրոցկիստական-զինովևյան
տեռորիստական կենտրոնը և այդ կենտրոնի
պարագլուխ Տրոցկին իր ստորադրյալներին
դիրեկտիվ է տալիս կազմակերպել կուսակ-
ցության և խորհրդային իշխանության ղե-
կավարների սպանություններ:

Կուսակցության և կառավարության ղե-
կավարների սպանության նախապատրաս-
տումով ավարտեց իր հանցավոր ուղին
տրոցկիստական-զինովևյան խմբակը: Բա-
նի՛ անգամ այդ խմբակի յելույթների
սկզբում ընդդեմ կուսակցության կուսակ-
ցությունը նախազգուշացրել է տրոցկիստ-



ներ-զինովևականներին նրանց հակակու-
սակցական գործունեության անխուսափելի
հետևանքներից: Բանի՛ անգամ կուսակցու-
թյունը ներել է տրոցկիստներ-զինովևա-
կանների հանցագործությունները, հույս ու-
նենալով, որ նրանք կուղղվեն: Կամենևն
ու Զինովևը, քարթու տրոցկիստներ
Մրաչկովսկին ու Սմիրնովը դատարանում
ստիպված էին ընդունել, որ կուսակցու-
թյունը, Կենտրոնական Կոմիտեն և ընկեր
Ստալինը արել են այն ամենը, ինչ հնարա-
վոր էր նրանց հակահեղափոխությունից
հետ պահելու համար: Սակայն մի անգամ
վոտք կոխելով սոցիալիզմի դեմ պայքարե-
լու ուղին՝ տրոցկիստներն ու զինովևա-
կաններն անխուսափելիորեն ցած էին
գլորվում աստիճանից աստիճան: Կուսակ-
ցության մեծամասնությանը չենթարկվե-
լուց, ֆրակցիոն պայքարից դեպի անլեգալ
թռուցիկների տպագրության, դեպի կոն-
սպիրացված ընդհատակի ստեղծում, դեպի
հակախորհրդային ցույցերի ու գործա-

դուլների կազմակերպում, դեպի դո-դում սպիտակ-գվարդիականների հետ և վերջապես դեպի գարշելի տեռոր կոմունիստական կուսակցության և խորհրդային իշխանության ղեկավարների դեմ, դեպի Սերգեյ Միրոնովիչ Կիրովի սպանությունը, դեպի մահափորձ ժողովրդի առաջնորդ ընկեր Ստալինի և նրա զինակիցների դեմ, դեպի դաշինք գերմանական ֆաշիզմի արյունոտ պահնորդական բաժնի հետ (Գեստապո)—ահա տրոցկիստական-զինովևյան հակահեղափոխության խայտառակ ուղին:

Այս օրինակով միանգամայն արդարացի դուրս եկան Լենինի ցուցումները 1921 թվին կուսակցության X համագումարում այն մասին, թե մանր-բուրժուական, անարխիստական հակահեղափոխությունը «քաղաքական մի աստիճան է դեպի սպիտակ-գվարդիականությունը» և որ իր սխալները պնդող ֆրակցիան անպայման սոցիալիզմի թշնամիների, խորհրդային իշխանության թշնամիների բանակը կանցնի:



Տրոցկիստական-զինովևյան, տեռորիստական կենտրոնի դատավարության ժամանակ Կամենևին ու Զինովևին իրենց գարշելի, տեռորիստական գործունեությունը բացատրում էին... «իշխանության ծարավով»...

Խղճուկ ֆա՛րս:

Իսկ ինչո՞ւ էին այդ մասին այնքան չադակրատում ֆաշիստական բանդիտների պաշտպանները: Ինչո՞ւ այս «բացատրությունը» այնպիսի ուրախությամբ վերցրեց ֆաշիստական մամուլը, որը «Ֆրանկֆուրտեր ցայտունգի» նման խոսում էր Կամենևի ու Զինովևի «սաստիկ փառասիրության» մասին, որը այս անթիվ հիչում էր Դոստոևսկու հայլին:

Ամեն վոք, ով մարքսիստորեն է մտածում, գիտե, որ իշխանության ձգտման յետևը թաղնվում են հասարակական խմբերի միանգամայն ռեալ շահեր, դասակարգային շահեր, կանգնած են դասակարգ կամ դասակարգեր:

Ամեն մի մարքսիստի համար այբուբեն է, որ իշխանության են «ձգտում» և այդ իշխանության համար են պայքարում հենց այն պատճառով, որպեսզի որոշ միջոցառումներ, որոշ դասակարգի շահերով թելադրվող, այդ շահերը արտացոլող ու արտահայտող ռեալ ծրագիր կենսագործեն: Ճիշտ է, այդ ծրագիրը ոչ միշտ է բացահայտորեն ձևակերպվում կամ հրապարակվում. հաճախ այդ ռեալ ծրագիրն ամեն կերպ քողարկվում է լայնախոստում դեկլարացիաներով, շաղակրատությամբ, որը համեմվում է սոցիալական դեմագոգիայով, ինչպես օրինակ ֆաշիստների կամ սոցիալ-դավաճանների մոտ: Բայց այս հանգամանքը դրությունը ամենևին չի փոխում: Մարքսիստը հենց պետք է կարողանա տեսնել ու ցույց տալ այն իսկական, իրական ծրագիրը, որով իրոք ղեկավարվում է տվյալ քաղաքական խմբակը կամ կուսակցությունը:

Միայն ապուշը կամ իր հաշիվն իմացող



ֆաշիստական դեմագոգը Իտալիայի կողմից Հաբեշստանը գրավելը կբացատրի Մուսոլինիի «իշխանության ծարավով», իսկ իսպանական ֆաշիստների խռովությունը՝ գեներալներ Մոլայի ու Ֆրանկոյի անձնական փառասիրությամբ:

Մի՞թե Հիտլերին իշխանության մերկ ծարավն է ստիպում կտրել գերմանական կոմունիստների գլուխները:

Հանցանքի մեջ բռնված տեռորիստական բանդայի պարագլուխների կողմից կուսակցության և խորհրդային կառավարության ղեկավարների դեմ կատարվող տեռորն իրենց փառամոլությամբ բացատրելու փորձը ժողովրդի թշնամիների վերջին սուտը, վերջին յերկերեսանիությունն եր:

Կամենևն ու Զինովյևը չկարողացան նույնիսկ դատարանում—նրանց ֆաշիստական պաշտպանները չեն կարողանում նաև այժմ—ասել տրոցկիստական-զինովյևյան տեռորիստական կենտրոնի ծրագրի մասին ճշմարտությունը:

Սպիտակ-գվարդիական տեռորը յերբեք ծրագրից դուրս չի յեղել: Յերբ սպիտակ եսեր Կապլանն ատրճանակի փողն ուղղում եր Լենինի սրտին, նա, ինչպես և մահափորձի կազմակերպիչները—սպիտակ եսերների կենտրոնական կոմիտեն—իր առաջ միանգամայն վորոշակի խնդիր եր դնում՝ վերականգնել այն, ինչ սրբել եր Մեծ պրոլետարական հեղափոխությունը 1918 թվի օգոստոսի 30-ից 10 ամիս առաջ:

Յերբ 1922 թվին սպիտակ գվարդիական Կոնրադին կրակում եր ընկ. Վորովսկու դեմ Լոզաննում, իսկ 1927 թվին սպիտակ գվարդիական Կավերդան ընկ. Վոյկովի դեմ Վարշավայում, կրակող բանդիտները հաստատ ծրագիր ունեյին՝ վիժեցնել ԽՍՀՄ-ի խաղաղության քաղաքականությունը պատերազմ հրահրել Խորհուրդների յերկրի դեմ, այդ ձևով հասնել խորհրդային իշխանության տապալմանը, կապիտալիզմի վերականգնմանը:

Յեվ խորհրդային իշխանությունը վոչըն-



չացնելու, սոցիալիստական կարգերը վոչընչացնելու, կապիտալիզմը, կալվածատերերի ու փաբրիկանտների իշխանությունը վերականգնելու նույն ծրագիրն եյին դնում իրենց առաջ Տրոցկին, Զինովյեվը, Կամենեվը ու նրանց արբանյակները, յերբ սպանում եյին ընկ. Կիրովին, ատրճանակ եյին բարձրացնում ընկեր Ստալինի և նրա զինակիցների դեմ:

Այժմ գնդակահարված բանդիտ Սմիրնովը դատարանում ասում եր, վոր ծրագիրը չի հանդիսացել տրոցկիստական-զինովյեվյան հակահեղափոխական ընդհատակի քննարկման առարկա:

Հատկանշական ե, թե ինչու տեռորիստները կարիք չունեյին ծրագիրը քննարկման յենթարկելու, վորովհետև այդ ծրագիրը նըրանք վաղուց իվեր կրում եյին իրենց արգանդում կուսակցության դեմ մղած նրանց բազմամյա պայքարի ընթացքում:

Տեռորիստ Ռեյնգոլդը ստիպված եր դատարանում հաստատել, վոր տրոցկիստա-

կան-զինովյեվյան տեռորիստական կենտ-
րոնն անհրաժեշտ չէր համարում փոխել
այլ ծրագիր ստեղծել, քան այն, որ նա ա-
ռաջ էլ ունեցել է:

Միթե կարո՞ղ էին սոցիալիզմի թշնամի-
ները այլ ծրագիր ունենալ, քան կապիտա-
լիստական կարգերի վերականգնման ծրա-
գիրը:

Սոցիալիզմի կառուցման դեմ պայքար
մղելը միշտ էլ նշանակել է, թե՛ թեորիայում
և թե՛ գործնականում, պայքար կապիտա-
լիզմի վերականգնման համար, շահագոր-
ծողների իշխանությունը վերականգնելու
համար:

Բայց հենց այդ վերականգնողական ծրա-
գիրն է, որ տրոցկիստական-զինովյեվյան
տեռորիստները չէին կարող ցույց տալ ժո-
ղովրդին: Նրանք սիրտ չէին անում այդ
մասին խոսել պրոլետարական դատարանի
դաժան վարձահատուցման նախօրյակին ան-
գամ: Նրանք այդ ծրագիրն ավելի խորն ե-



յին ծածկում, քան մարդասպանների լցրած
բրաունինգներն էին ծածկում:

Ամենազազրելի՛ ծրագիր:

Այդ ծրագրի իրագործման ամենազազրելի
միջոցները—ահա թե ինչը տրոցկիստական-
զինովյեվյան տեռորիստական կենտրոնը
շաղկապեց ֆաշիզմի հետ, ահա թե ինչը
զոդեց Տրոցկուն, Զինովյեվին, Կամենևին
և մյուսներին սերտ դաշինքի մեջ Գեստա-
պոյի հետ:

1932 թվին ստեղծվում է տրոցկիստական-
զինովյեվյան տեռորիստական կենտրոնը:
1933 թվի հունվարի 30-ին բանվոր դասա-
կարգի արյան վրայով իշխանության գլուխն
են անցնում հիտլերականները—ֆաշիզմի
այդ ամենառեակցիոն մի տարատեսակը:
Այդ դեպքերի զուգադիպումը ժամանակի
տեսակետից պատահական չէ: Տրոցկիս-
տական-զինովյեվյան հակահեղափոխությու-
նը հոգով հարազատ դուրս յեկավ «ֆինան-
սական կապիտալի ամենառեակցիոն, ամե-
նաշովինիստական, ամենաիմպերիալիստա-

կան տարրերին»։ Ի դեմս տրոցկիստական-զինովևյան բանդաների միջազգային հակահեղափոխական բուրժուազիան գտավ իր առաջավոր ջոկատը, իր կամքի և իղձերի «արժանի» արտահայտիչը։

Ֆաշիստներն իրենց նպատակ են դնում պահպանել կապիտալիստական սիստեմը։ Տրոցկիստներ-զինովևականների նպատակն է վերականգնել այդ սիստեմը յերկրագնդի մեկ վեցերորդ մասում, ուր այն վոչնչացված է ՍՍՀՄ-ի աշխատավորների կողմից։

Ֆաշիզմը իմպերիալիստական պատերազմի գլխավոր հրձիգն ու Խորհրդային Միության դեմ ուղղված խաչակրաց արշավանքի դրդիչն է հանդիսանում։ Տրոցկիստական-զինովևյան բանդաները ձգտում են պատերազմ հրահրել ընդդեմ Խորհրդային Միության, վորովհետև նրանք այդ պատերազմի մեջ են տեսնում կապիտալիզմի վերականգնման ուղին։

Իզուր չէ, վոր Տրոցկին, Զինովևը և



Կամենևը բացահայտ անամոթությամբ նախապատրաստում էյին ՍՍՀՄ-ի պարտությունն ապագա պատերազմում ընդդեմ ֆաշիստական ինտերվենտների։

Զուր չէ, վոր «համաշխարհային բոլշևիզմի» դեմ պայքար մղելու լոզունգը, վորի մասին նորից աղաղակում են Հիտլերն ու Հեբբելսը Նյուրենբերգի ֆաշիստական համագումարում, միավորում է Հիտլերին ու Տրոցկուն։

Ֆաշիզմի տրոցկիստական-զինովևյան գործակալները կարող են մրցել իրենց տերերի՝ ֆաշիստների հետ դեպի սոցիալիզմը, դեպի կոմունիստական կուսակցությունն ու նրա ղեկավարները, դեպի Խորհրդային Միության ժողովուրդների յերջանիկ կյանքը տածած իրենց ատելությամբ։ Ֆաշիզմը տրոցկիստական-զինովևյան բանդաների մոտ հանդիպում է խորհրդային իշխանության դեմ պայքարելու ամենադարշելի, ամենազզվելի միջոցների մինչև խաբեություն չզննելու իրեն հարազատ հայրենիքի հա-

կուլթյան: Տրոցկիստական-զինովևյան տերորիստները անփոխարինելի չեն ֆաշիզմի համար դիմակավորվելու հատկությամբ: Գեստապոյի ի՞նչ ուրիշ գործակալ կարող է այնպես ճարպիկ կերպով քողարկվել կուսակցական տոմսով, յերկերեսանիությամբ շահել այն կուսակցության վստահությունը, վորի ներքին կյանքը յերկար տարիների ընթացքում նա գիտե, յեթե վոչ տրոցկիստ-զինովևյանները: Ֆաշիստական գաղտնի վոստիկանության ուրիշ վո՞ր գործակալն է անցել հակակուսակցական և հակախորհըրդային պայքարի, հակահեղափոխական խորը ընդհատակի, տեռոր պրովոկացիայի, սաբոտաժ-դավադրական լրտեսության, դիվերսիայի ու տեռորի այդպիսի յերկարատև «դպրոց»:

Վերջապես ԽՍՀՄ-ի սահմաններից դուրս գտնվող հակահեղափոխական բուրժուազիան առանձնապես թանկ է գնահատում իր առաջավոր ջոկատը—տրոցկիստական-զինովևյան բանդաներին—հենց այն պատճա-



ռով, վոր նրանք ձգտում են ֆիզիկապես վոչնչացնել բանվոր դասակարգի լավագույն մարդկանց, մարդկության լավագույն մարդկանց, կոմունիստական կուսակցության և խորհրդային իշխանության ղեկավարներին, ձգտում են գլխատել աշխատավոր մասսաներին:



Պրոլետարական հեղափոխության առաջնորդների մասին Լենինն ասում եր, թե նրանք ավելի լավ և ավելի ամբողջական կերպով են արտահայտում, քան վորևե մեկը, «պրոլետարական հեղափոխության ամենագլխավոր և ամենաեական գծերը»:

Լենինը հենց դրա մեջ եր տեսնում բանվոր դասակարգի հեղափոխության ղեկավարների նշանակությունը:

Մեր յերկրում սոցիալիստական հեղափոխության ամենագլխավոր և ամենաեյական գծերն ամենից առաջ արտահայտում է աշխատավորների հանճարեղ առաջնորդ,

Լենինի գործի մեծ շարունակող ընկեր Ստալինը և նրա հետ միասին նրա ամենամոտ զինակիցները—սոցիալիզմի շտաբ Համ․Կ(բ)Կ Կենտրոնական Կոմիտեյի Քաղբյուրոն: Խորհրդային յերկրի ժողովրդի համար Ստալինի և նրա զինակիցների մեջ մարմնավորված է սոցիալիզմը—ԽՍՀ Միության 170 միլիոնանոց ժողովրդի յերջանիկ ներկան և բերկրալի ապագան և դեռևս կապիտալիզմի ու ֆաշիզմի լծի տակ տառապող մարդկության համար գալիք հեռանկարները: Ընկեր Ստալինի անունը և նրա մերձավոր զինակիցներ Մոլոտովի, Կագանովիչի, Վորոշիլովի, Օրջոնիկիձեյի, Կոսիորի, Պոստիշևի, Ժդանովի անունները վաղուց արդեն դարձել են հարազատ, մոտիկ խորհրդային ամբողջ ժողովրդի համար—

«Մոսկվայից մինչև ամենահեռավոր
ծայրամասերը,

Հարավային լեռներից մինչև
հյուսիսային ծովերը...»



Ժողովրդի մտքում և սրտում մեծ Ստալինի անունը նշանավորում է սոցիալիստական կարգերի հաղթանակը, արտահայտում է աշխատավոր մասսաների լավագույն իղձերն ու ձգտումները: Այս հաղթանակների հետ են կապված նաև ստալինյան զինակիցների անունները: Ընկ․ Մոլոտովի անունը կապված է պրոլետարական դիկտատուրայի որգան՝ խորհուրդների ամրացման հետ․ ընկ․ Կագանովիչի անունը՝ սոցիալիստական գյուղատնտեսության ամրացման, խորհրդային մայրաքաղաքի աճման, մեր յերկաթուղային տրանսպորտի բուռն աճման հետ․ ընկ․ Վորոշիլովի անունը՝ անպարտելի Կարմիր բանակի հետ, սոցիալիստական հայրենիքի պաշտպանունակության ամրացման հետ․ Սերգո Օրջոնիկիձեյի անունը՝ ինդուստրացման միջուկ ծանր արդյունաբերության հըզոր զարգացման հետ:

Ընկեր Ստալինն իր ամենամոտիկ զինակիցների հետ ղեկավարում է սոցիալիզմի հաղթական շինարարությունը, անդասա-

կարգ սոցիալիստական հասարակության կառուցումը:

Այդ գիտե, տեսնում է, զգում է ամեն օր, ամեն ժամ 170 միլիոնանոց խորհրդային ժողովուրդը: Ահա թե ինչու այդպիսի ջերմ, շնորհակալ սիրով և նվիրվածությամբ են վերաբերվում ժողովրդական մասսաները դեպի իրենց առաջնորդը: Ահա թե ինչու այսպիսի ջերմությամբ են արտասանվում Ստալինի անվան կողքին Մոլոտովի, Կագանովիչի, Վորոշիլովի, Օրջոնիկիձեյի անունները:

Ստալինն ու նրա զինակիցները ժողովրդի առաջնորդներն են. ժողովրդի շահերից ելնելով նրանք ղեկավարում են սոցիալիզմի մեծ շինարարությունը:

Այդ գիտե Տրոցկին, այդ գիտեյին Զինովյևը, Կամենևը և նրանց արբանյակները: Հենց այդ պատճառով է, որ նրանք սպանեցին ժողովրդի սիրած բոցավառ տրիբուն Սերգեյ Միրոնովիչ Կիրովին, հենց այդ է պատճառը, որ նրանք պատրաստվում եյին



սպանել ընկերներ Ստալինին, Մոլոտովին, Կագանովիչին, Վորոշիլովին, Օրջոնիկիձեյին, Կոսիորին, Պոստիշևին, Ժդանովին:

Բանդիտները գիտեյին, թե ում են նշան բռնում: Ստալինի վրա ձեռք բարձրացնելով, պատրաստվելով ստոր կերպով սպանելու Համամիութենական կոմունիստական բոլշևիկների կուսակցության Կենտրոնական Կոմիտեյի Բյուրոյի անդամներին, նրանք դավադրում եյին ՀամԿ(բ)Կ քաղաքականության, իսկական ժողովրդական քաղաքականության, խորհրդային ժողովրդի նվաճած, կառուցած սոցիալիզմի դեմ: Նրանք դավադրում եյին սոցիալիստական ինդուստրացման դեմ, Խորհրդային Միության հերոսական բանվոր դասակարգի կառուցած գեղեցիկ ֆաբրիկների ու գործարանների դեմ: Նրանք դավադրում եյին գյուղատնտեսության կոլեկտիվացման դեմ, ծաղկող կոլտնտեսությունների ու խորհտնտեսությունների դեմ, որոնք ստեղծել են աշխատավորները դողացած կուլակու-

թյան դեմ մղած պայքարում: Նրանք դավադրում էին ժողովրդական մասսաների աճող բարեկեցության դեմ, նրանց նյութական բարօրության, ծաղկող՝ ձևով ազգային և բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի դեմ, Խորհրդային Միության ժողովուրդների բարեկամության դեմ:

Պատրաստվելով սպանել ժողովրդի առաջնորդներին, տրոցկիստական-զինովևյան բանդիտները դավադրում էին ամբողջ ժողովրդի դեմ, նրա կառուցած յերջանիկ, սոցիալիստական կարգերի դեմ, փորձելով վերականգնել կապիտալիզմի նզովյալ լուծը: Ահա թե ինչի համար էին միացել ժողովրդի գազազած թշնամիները՝ օբեր-բանդիտ Տրոցկին, տեռորիստների պարագլուխները, յերկերեսանիության ու դավաճանության թրծված վարպետները՝ Զինովևը և Կամենևը, նրանց ձեռնասուններ Պիկելը, Յևդոկիմովը, քարթու տրոցկիստներ Սմիրնովը, Մրաչկովսկին, Տեր-Վահանյանը, Ռեյնգոլդը, յերդվյալ մարդասպաններ



Բակայևը և Դրեյցերը, գերմանական պահնորդական բաժնի (Գեստապոյի) գործակալներ Օլբերգը, Մոիսեյ և Նաթան Լուրիեները, Տրոցկու ուղարկած դիվերսանտ տեռորիստ Ֆրից Դավիդը, Գոլցմանը, Բերման-Յուրինը:

Ահա թե ինչու այդպես սերտ կերպով կապվել են իրենց պղծելի ու ստոր գործունեության մեջ Տրոցկին, Զինովևը, Կամենևը և նրանց վոհմակը ֆաշիստական պահնորդական բաժնի—Գեստապոյի հետ:

Զուր չէ, վոր ֆաշիստական մամուլն այդպիսի ջանասիրությամբ սրբում է իր գործակալների՝ գնդակահարված տեռորիստների ու Տրոցկու հետքերը: «Ֆրանկֆուրտեր ցայտունգը» թերթը բերանին աղաղակում է, թե տրոցկիստական-զինովևյան բանդիտների և ֆաշիստների կապի մասին յեղած տեղեկությունները «ագիտացիոն աղմուկ» են: Ֆաշիստ գրչակները գոհունակությամբ քաղվածքներ են բերում Տրոցկու ծայրեիծայր խաբեբայական «Իմ

կյանքը» գրքից, վորպեսզի ապացուցեն Տրոցկու և նրա ձեռնասունների «հեղափոխականությունը»:

Ֆաշիստական մամուլի խմբին միացել է այն մարդանց ձայնը, վորոնք վաղուց արդեն հայտնի եյին իբրև բուրժուազիայի «անկեղծ նվիրված» ծառաներ: Պարոնայք Սիտրինները, Ֆրիդրիխ Ադլերները, դե Բրուկերները և սոցիալ-դեմոկրատական ամեն տեսակի և գույնի մամուլը իրենց վրա յեն վերցրել տրոցկիստական-զինովյեվական մարդասպանների փաստաբանի դերը, ֆաշիստական ղամքաշի դերը: Այդ փաստաբանների նպատակը պարզ է. նրանք աշխատում են ծածկել միջազգային բանվոր դասակարգից տրոցկիստական-զինովյեվյան բանդիտների — ԽՍՀՄ-ում կապիտալիզմի ռեստավրատորների առաջավոր ջոկատի— իսկական եյությունը:

Սակայն Սիտրիններին և նրանց արբանյակներին չի հաջողվի հետքերը կորցնել և խաբել բանվոր դասակարգին: Դատավա-



րությունը անհերքելի պարզությամբ մինչև վերջը մերկացրեց տրոցկիստական-զինովյեվյան բանդիտների—կապիտալիստական ստրկության վերականգնիչների — զզվելի ծրագիրն ու այդ ծրագրի կենսագործման զզվելի միջոցները:

Ահա թե ինչու բանդիտներին ատելության անեծքով պատասխանած ամբողջ 170 միլիոնանոց խորհրդային ժողովուրդը, աշխարհիս բոլոր յերկրների բանվորները—այն ամենքը, վորոնք ազնիվ են մարդկության շարքերում—վողջունում են խորհրդային դատարանի խիստ և արդար դատավճիռը:



Խորհրդային պետության պահակ—Ներքգործժողկոմատի մարմինների աչալրջությունը քանդեց Տրոցկու, Զինովյեվի և Կամենևի չարագործ մտադրությունները: Տրոցկիստական-զինովյեվյան բանդիտները կանգնեցին խորհրդային դատարանի առաջ և արժանի պատիժը կրեցին:

Խորհրդային դատաստանը տրոցկիստական-զինովևյան մարդասպանների նկատմամբ դարձավ պատմության դատաստան: Գերագույն դատարանի ռազմական կոլեգիայի դատավճռի ամեն մի բառի մեջ հնչում է շահագործողների լուծն ընդմիշտ թոթափած ժողովրդի պատմական ճշմարտությունը:

Ֆաշիստական վարձկաններ Տրոցկու, Զինովևի և Կամենևի, ԽՍՀՄ-ի սահմաններից դուրս յեղած հակահեղափոխական բուրժուազիայի առաջավոր ջոկատի ղեկավարների հույսերը մեր յերկրում կապիտալիզմը վերականգնելու մասին նույնպիսի ճարճատյունով փլժեցին, ինչպես և նրանց նախորդներ՝ սպիտակ եսերների, Արդյունաբերական կուսակցության, կոնդրատյևականների և մենշևիկների հույսերը:

Սոցիալիստական կարգերը մեր յերկրում հաստատվել են ամուր, անխախտ և անվերադարձ կերպով: Վոչ վոք այլևս չի կարող պատմությունը հետ դարձնել: Յերբեք



այլևս չի վերադառնա կալվածատերերի ու կապիտալիստների իշխանությունը:

Խորհրդային ժողովուրդը Համամիութենական կոմունիստական բոլշևիկների կուսակցության և ժողովրդի առաջնորդ մեծ Ստալինի ղեկավարությամբ կգնա դեպի սոցիալիզմի նորանոր խոշոր հաղթանակներ: Ամեն վոք, վոր կհամարձակվի այդ ճանապարհին մեզ խանգարել, տրոցկիստական-զինովևյան բանդիտների նման կջարդվի և դուրս կնետվի պատմության աղբակույտը:

«Большевик» ժուռնալ,
1936 թ. № 18:

